ծաւալումը, ի՛նչ աշխատանք թափած էր՝ օգտագործելով անցեալին ժառանգութիւնը, հոգեբանութիւն, սրամտութիւն, թափանցողութիւն: Բայց շատ երկար էր, տեղ-տեղ այնքան խորունկ որ խաղարկութիւնը կը պահանջէր եօթը օր: Բեմադիրը ջնջեց, ջնջեց, ջնջեց, եւ ո՛րքան կը ջնջէր այնքան աքանչելի կը դառնար թատերախաղը: Այսօր համոզուած եմ որ, եթէ քաջութիւն ունենար բեմադիրը եւ ջնջէր բոլորը, մինչեւ վերջ, աւելի լաւ կ՚ըլլար:

ՄԱՄՈՒԼԻ անգլիական Ռէօյթըր գործակալութեան նախկին տնօրէնը Քէմփպէլ, մեռաւ 66 տարեկանին:

ԺԵՌՄԷՆ ՌԻՇԻԷ արդի մեծագոյն քանդակործներէն մէկը, մեռաւ 55 տարեկանին, տաժանակիր հիւանդութենէ մը յետոյ:

ՖՐԱՆՍԱՅԻ հարաւային շրջանը (Նիս եւ Վանս) կը շարունակուին հրդեհները:

ԻՏԱԼԻՈՅ վարչապետը՝ Սէննի եւ Արտաքին նախարար Ծիուզեփփէ Փելլա Անգլիա հրաւիրուեցան:

ՎԱՐՇԱՒԱՅԻ համայնավար պաշտօնաթերթ՝ Թռիպունա Լուտա անդրադառնալով Պոնի (Արեւմտեան Գերմանիա) կառավարութեան մտադրած ոչ-յարձակողական դաշինքին Լեհաստանի հետ, կը գրէ.— «Քաղաքական ոչ մէկ մարդ կայ որ համակերպի նման դաշնագրի մը գաղափարին իսկ: Պոն դիտմամբ մէջտեղ կը հանէ նման դաշնագրի մը ծրագիրը յայտնելու համար բացէ ի բաց թէ երբեք պիտի չճանչնայ Օտէռ-Նայս սահմանը»:

ԱՆԳԼԻՈՅ տպարանական տագնապը որ կը տեւէր 6 շաբաթէ ի վեր, վերջ գտաւ ուրբաթ օր: Գործադուլը 40 միլիոն արժեց գործատէրերուն եւ ընկերակցութեանց:

ՁԱՅՆԱՍՓԻՒՌ կոչով մը, Հանրային աշխատութեանց եւ փոխադրութեանց նախարարը, Պ. Ռոպէռ Պիւրոն խոհեմութեան կը հրաւիրէ կառքով արձակուրդի մեկնողները: Ամէն ճամբորդ՝ անձնապէս իր եւ ուրիշներու կեանքին խնայելու համար, պէտք է բացարձակապէս յարգէ ճամբու օրէնքները. «Յարգել մասնաւորաբար արագութեան չափաւորումները եւ ամէն կերպով խոհեմ ըլլալ, առ հասարակ: Կոչ եւ հանրային յանձնարարութիւն ապարդիւն են անշուշտ, եթէ ամէն ոք լաւ չըմբռնէ եւ պարկեշտութեամբ գործադրէ զանոնք»:

ԱՐՁԱԿՈՒՐԴԻ պատճառով Փարիզէն եռացող հարիւր հազարաւոր կառքերը կարելիութիւն պիտի տան մնացողներուն, աւելի դիւրաւ եւ ազատ կերպով կանգ առնելու մայրաքաղաքի փողոցներուն մէջ: Համաձայն Ոստիկանապետարանի հաղորդագրութեան, Օգոստոս 1էն 31 ջնջուած է «կապոյտ գօտի» նկատուած շրջանի փողոցներուն մէջ մէկ ժամ միայն կենալու եւ ժամանակացոյց գործածելու պարտաւորութիւնը:

ԹՈՔԻՈՅԻ համալսարանի անուանի ուսուցիչ եւ հարաւային բեւեռի ուսումնասիրութեան ճափոն գիտուններու արշաւախումբին պետը՝ Փրոֆ. Թաքեշի Նաքամթա, կը հաստատէ թէ անցեալին, աւելի 500 միլիոն տարի առաջ, երկրի հիւսիսային բեւեռը կը գտնուէր Խաղաղական ովկիանոսի այժմու կեդրոնը: Ըստ գիտնականին, որ մօտերս այդ նիւթին վերաբերեալ մանրամասն զեկուցում մը պիտի ընէ Ճափոնի Երկրամագնիսական Ընկերութեան, իր տեսութիւնը հաստատող երկրաբանական անհերքելի փաստեր հաւաքած է դէպի բեւեռ կատարած գիտական արշաւին ընթացքին:

Կը խնդրուի հաղորդել
ՏԻԿԻՆ ՍԱԹԵՆԻԿ ՇԵՐՊԷԹԵԱՆԻ
(Ծնեալ Տէր-Ներսէսեան)
մահը որ տեղի ունեցաւ Պօլիէօյի մէջ (Ալփ-Մարիթիմ), Յուլիս 29ին, ուրկէ մարմինը Փարիզ պիտի փոխադրուի:

Յուղարկաւորութիւնը կը կատարուի այս չորեքշաբթի, Փարիզի Ս. Յովհաննէս-Մկրտիչ եկեղեցիին մէջ:

Մանրամասնութիւնները՝ մեր վաղուան թիւով:

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏՕՆ

Կազմակերպուած Փարիզի եւ շրջակայից Հայց. Առաքելական Եկեղեցւոյ Կրօնական Ընկերութեան կողմէ, տեղի պիտի ունենայ 11 Հոկտ. 1959, ժամը երեքին: Սորպոնի մեծ Ամփիթատրոնին մէջ: Մանրամասնութիւնները յետագային: Նկատի ունենալ այս թուականը:





## ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ
### ԱՐՁԱԿՈՒՐԴԻ ՄԵԿՆՈՂ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐ

Մեր բաժանորդները որ կը փափաքին առժամապէս, նոր հասցէի մը ստանալ թերթը պէտք է գրաւոր դիմեն վարչութեան: Փոխելի թուականէն գոնէ երկու օր առաջ, պէտք է տան ԻՐԵՆՑ ՀԻՆ ԵՒ ՆՈՐ ՀԱՍՑԷՆԵՐԸ, վճարեն հարիւր փրանք փոփոխութեան համար եւ նորոգած ըլլան իրենց ընթացիկ բաժանորդագրութիւնը:

Այս պայմանները չլրացնող դիմումներուն գոհացում պիտի չտրուի. նոյնպէս՝ նկատի պիտի չառնուին միայն հեռաձայնով կատարուած հաղորդումները, որոնք կրնան անունի եւ հասցէի սխալներ ստեղծել:

Մեր հատադնորդ ընթերցողներուն համար, արձակուրդի բացառիկ միամսեայ բաժանորդագրութեան գինն է 600 ֆր.:

×

Անգամ մը եւս կը խնդրենք մեր հաւատարիմ բաժանորդներէն որ փութան կատարել իրենց վճարումները, դիւրացնելու համար վարչութեան գործը:

Շնորհակալութիւն այն բոլոր բաժանորդներուն որոնք իրենց կանխիկ եւ պարտաճանաչ վճարումներով կ՚օժանդակեն թերթին կանոնաւոր հրատարակութեան: ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ԿԱՅԱՆ

ՎԵՐԱԴԱՐՁ

Առաջին խումբը Պէլֆոնթէնէն Փարիզ կը հասնի Կիրակի 2 Օգոստոս, առաւօտեան ժամը 6.35ին Կառ տը Լիոն:

ՄԵԿՆՈՒՄ

Բ. խումբը Փարիզէն կը մեկնի 3 Օգոստոսին: Կառ տը Լիոն՝ Փլաս տը լ՚Օռլօժ, գտնուիլ ժամը ճիշդ 22ին:



ԽԱՆԱՍՈՐԻ 62րդ ՏԱՐԵԴԱՐՁԸ

կը տօնուի Նիսի մէջ նախաձեռնութեամբ
Հ. Յ. Դ. Գէորգ Չաւուշ խումբին
Հովանաւորութեամբ
Հ. Յ. Դ. Մարսէյլի Շրջ. Կոմիտէին
կիրակի 9 Օգոստոս, ամբողջ օրը
"LES CENT CHÊNES"
CAMPING CHEZ M. ODDO, ST-JEANNET

Առնել Սէն-Լօրան տը Վառէն Սէն-Ժանէի ճամբան եւ Սէն-Ժանէ չհասած դէպի աջ շեղիլ եւ հարցնել Սէն-Ժանէ: Մասնաւոր օթոքար մը ճամբայ կ՚ելլէ Փլաս Մասէնայէն ժամը 9ին եւ կը հասնի Մատըլէն 9,30ին: Երկրորդ օթոքար մը ժամը 14,15ին: Առանցմէ զատ Կառ տէ գ՚Օթոպիւսէն առնել Սէն-Ժանէի օթոքարը

Կը նախագահէ ընկ. ՇԱՀԱՆ ՋՕՏԵԱՆ

կը բանախօսեն
ընկ. ԳԱՐԵԳԻՆ ԳԷՈՐԳԵԱՆ
ընկ. ԱՍԱՏՈՒՐ ՔԷՕՍԷԵԱՆ
Գեղարուեստական ճոխ բաժին

ՃՈԽ ՊԻՒՖԷ ՄՈՒՏՔԸ ԱԶԱՏ Է



ՆՈՐ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆՆԵՐ

ԱՄԷՆՈՒՆ ՏԱՐԵԳԻՐՔԸ.— Կարօ Գէորգեանի, 1959, Զ. տարի, լաթակազմը՝ 1700 Ֆրանք, թղթակազմը՝ 1400 ֆր., 640 էջ, մաքուր տպագրութիւն, բազմաթիւ նկարներով (Ֆրանսահայ գաղութին մասին միայն 182 էջ) թղթատարի ծախք՝ երկու հարիւր ֆրանք:

ՅՈՎԱԶԱԶՈՐԻ ԳԵՐԻՆԵՐԸ, Վ. Անանեան (արկածային վիպակ) տպ. «Յուսաբեր», Գահիրէ, 1959, էջ 558: Գին՝ 900 ֆրանք:

ԱՒԵՏԻՔ ԻՍԱՀԱԿԵԱՆԻ ՆԱՄԱԿՆԵՐԸ, տպ. «Յուսաբեր», Գահիրէ, 1959, էջ 169, գին 400 ֆրանք:

Imprimerie Spéciale
du Journal « Haratch »

չակել թէ խորհրդային հրթիռները տեսնել » :

Խրուշչեւ շատ գոհ կ'երեւայ եւ իր ժըպիտը գիւրին կը բացատրուի օտար լրագրողներու կողմէ : Ամփոփելէ ի վեր Խրուշչեւի հետապնդած երեք նպատակները իրագործուած են . ա) Միացեալ Նահանգները պէտի այցելէ եւ ուղղակի պէտի խօսի ամերիկացի ժողովուրդին որ, իր կարծիքով, կրնայ ազդուիլ մասնաւորաբար իր «ոճէն» : բ) Երկու «բարձրագոյն»ներուն գրոյցը իրականութիւն մը պէտի ըլլայ : գ) «Վերին» ժողովը տեղի պէտի ունենայ եւ քանի մը անգամով, Ուաշինկթըն եւ Մոսկուա : Այս ամէնը լայնօրէն կ'արդարացնեն Խրուշչեւի անկեղծ ուրախութիւնը :

—o—

ՍՊԱՆԱՑԻ զրագէտ եւ քաղաքական դէմք, Լուիս Առաքուխթէն մեռած է ժընեւի մէջ ուր կ'ապրէր 10 տարի է :

ՆԻՒ ԵՈՐՔԻ արքեպիսկոպոսը Կարդինալ Սփելման, անդրադառնալով Խրուշչեւի յառաջիկայ այցելութեան, յայտարարած է .— Կ'աղօթեմ որ Պ. Խրուշչեւ կարենայ կարդալ, ուսումնասիրել, խորհրրդածել եւ աստուածային շնորհքով մը գործադրել տասը Պատուիրանները : Կ'աղօթեմ նաեւ որ երկնային հրաշք մը առաջքն առնէ աշխարհի վերահաս կործանումի մը ահաւոր սպառնալիքին» :

ԳԱՀԻՐԷԻ Ալ Ահրամի համաձայն Իրաքի Վարչապետը՝ զօր. Քասըմ յայտարարած է թէ վարչաձեւին դէմ դաւադրութիւն մը երեւան հանուած է : Պետական հարուածի այս փորձը կազմակերպուած էր համայնավարներու կողմէ եւ պիտի սկսէր Օգոստոս 6ին, Պատերազմական նախարարութեան ռմբակոծումով :

ԼԱՈՍԻ կացութիւնը միշտ ծանր է : Հնդկաստան եւ Խորհ. Միութիւն շատ մտահոգ են : Ճավահարլալ Նեհրու յայտարարեց թէ պէտք է անպայման յարգուին ժընեւի համաձայնութիւնները հնդկական պետութեանց վերաբերեալ (1954 Յուլիս) :

ԱՄԵՐԻԿԵԱՆ արուեստական նոր արբանեակ մը «Հետախոյզ Զ» մէկ տարի պիտի դառնայ երկրին շուրջ :

ՖՐԱՆՍԱԿԱՆ ԵՐԵՔ ԿԱՌԱԽՈՒՄԲԵՐՈՒ կը պատկանի արագութեան համաշխարհային մրցանիշը : Ասոնք են՝ միսթրալը (128՝ միջին Փարիզէն Լիոն), Աքիլոնը (125՝ միջին Փարիզէն Լիոն) եւ Սիւտէքսփրէսը (121՝ միջին Փարիզէն Պորտօ) :

---

### ՏԻԿԻՆ ՎԱՐԴԱՆՈՅՇ ԵՍԱՅԵԱՆԻ

(Ծնեալ Բալուեան, Սէօլէօզցի)

յուղարկաւորութիւնը կը կատարուի այս երկուշաբթի առաւօտ ժամը 11ին : Հաւաքուիլ իր բնակարանը՝ 167 Ռիւ տը լ'Էկալիթէ, Իսի :

---



Շ. ՄԻՍԱՔԵԱՆ

# Օրեր եւ Ժամեր

---

### ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ ԲԱՆԱԿՈՒՄԻՆ
ՏԱՐԵԿԱՆ ՀԱՆԴԷՍԸ
**ՕԳՈՍՏՈՍ 16ԻՆ**

### ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ
### ԱՐՁԱԿՈՒՐԴԻ ՄԵԿՆՈՂ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐ

Մեր բաժանորդները որ կը փափաքին առժամապէս, նոր հասցէի մը ստանալ թերթը պէտք է գրաւոր դիմեն վարչութեան : Փոխելի թուականէն գոնէ երկու օր առաջ, պէտք է տան ԻՐԵՆՑ ՀԻՆ ԵՒ ՆՈՐ ՀԱՍՑԷՆԵՐԸ, վճարեն հարիւր ֆրանք փոփոխութեան համար եւ նորոգած ըլլան իրենց ընթացիկ բաժանորդագրութիւնը :

Այս պայմանները չլրացնող դիմումներուն գոհացում պիտի չտրուի . նոյնպէս՝ նկատի պիտի չառնուին միայն հեռաձայնով կատարուած հաղորդումները, որոնք կրնան անունի եւ հասցէի սխալներ ըստեղծել :

Մեր հատագնորդ ընթերցողներուն համար, արձակուրդի բացառիկ միամսեայ բաժանորդագրութեան գինն է 600 Ֆր. :

×

Անգամ մը եւս կը խնդրենք մեր հաւատարիմ բաժանորդներէն որ փութան կատարել իրենց վճարումները , դիւրացնելու համար վարչութեան գործը :

Շնորհակալութիւն այն բոլոր բաժանորդներուն որոնք իրենց կանխիկ եւ պարտաճանաչ վճարումներով կ'օժանդակեն թերթին կանոնաւոր հրատարակութեան : ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

---

### ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Հայաստանէն Արամ Բայբուրտցեան (Լենինական փողոց 15, տուն 28, Հայաստան Խորհ. Միութիւն) կը փնտռէ Հայկ Բայբուրտցեանը, հօրը անունը Արամ, մօրը՝ Ոսկեհատ, մեծ քրոջը՝ Սեդա, փոքր քրոջը՝ Լիլէթ :


Imprimerie Spéciale
du Journal « Haratch »


### ԱԶԴ

Հայ Նախկին Ռազմիկներու եւ Կամաւորներու Միութիւնը հրաւիրուած է Անծանօթ Զինուորի գերեզմանին բոցը արծարծելու այս ուրբաթ Օգոստ. 14, ժամը 18,30ին :

Հաւաքուիլ ժամը 18ին, Յաղթական Կամարին առջեւ :

Միութիւնը ջերմապէս կը խնդրէ ընկերներէն եւ հայրենակիցներէն որ մեծ թիւով իրենց մասնակցութիւնը բերեն :

---

### ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ

ԷՔս-լէ-Պէն

16 Օգոստ. կիրակի առաւօտէն մինչեւ իրիկուն, ամէն տարուան պէս պիտի կատարուի դաշտահանդէս ...լըֆըրիֆի մեկնակէտի մօ...այ Լա Շոմիէռ սրճա...ր ... դաշտերուն վրայ :

Առաւօտուն Ս. պատարագ եւ խաղողօրհնութիւն, մատուցմամբ Օշին վարդապետ Նիկոլեանի :

Ճաշէն վերջ գեղարուեստական բաժին, անակնկալներ եւ ճոխ վիճակահանութիւն : Հասոյթը պիտի յատկացուի երիտասարդ սերունդի համար եկեղեցական արարողութիւններու գրքոյկի մը հրատարակութեան հայերէն եւ ֆրանսերէն :

Անոնք որ կը փափաքին նիւթապէս կամ բարոյապէս օգտակար ըլլալ այս ձեռնարկին, կրնան դիմել Էքս-լէ-Պէն, Օթէլ Տը լա Կռոթ, Ա. Բամպուքճեանի :

---

### ԼԻՈՆ

Լիոնի մէջ Ս. Աստուածածնայ տօնը կը կատարուի 16 Օգոստոսի կիրակի օրը : Այս առթիւ մասնաւոր պատարագ պիտի մատուցուի, յետ պատարագի աւանդական խաղողի օրհնութիւնը տեղի պիտի ունենայ . Նոյն ատեն մատաղօրհնութիւն պիտի կատարուի : Ամէն անոնք որ կը փափաքին մատաղին մասնակցիլ, կրնան իրենց մասնակցողի գումարները յանձնել եկեղեցւոյ բանկալը՝ փոխան ստացագրի :

---



### ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ

Նոր արձանագրութիւնները կը շարունակուին 1959-1960 ուսումնական տարեշրջանին համար :

Իրենց զաւակները արձանագրել փափաքող ծնողքները փութան դիմել Տնօրէնութեան, գրաւոր կամ հեռաձայնով :

Collège Arménien S. Moorat
26, Rue Troyon - SEVRES (S & O.) Tél. : OBS. 18-28

Վարժարանի անցեալ տարուան աշակերտներուն ծնողքներուն ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ կը յանձնուի .—

Եթէ մինչեւ Սեպտեմբեր 8 չնորոգեն իրենց զաւակներուն արձանագրութիւնը, Տնօրէնութիւնը ի հարկին, ազատ է անոնց տեղերը յատկացնել նոր արձանագրութիւններու . հետեւաբար, այդ թուականէն առաջ պէտք է պատասխանեն, Տնօրէնութեան՝ Մայիսի մէջ ղրկած շրջաբերականին :

---

### Կ'ՈՒԶՈՒԻՆ

Դպրոցասէր Տիկնանց վարժարանին համար, 1) Նախապատրաստական 8-7րդ դասարաններուն համար իբրեւ ուսուցչուհի հայ օրիորդ մը, որ ֆրանսական բարձրագոյն կրթութիւն ստացած ըլլայ ի հարկին դիշերօթիկ :

2) Աշխատող կին մը, իբրեւ օգնական խոհարարուհի :

Դիմել վարժա... , գրաւոր , տալով անուն, տա... եւ հասցէ :

... Bld. du Nord - Le Raincy
Seine-et-Oise

---

### ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՀԱՄԱԽԱՐԲԵՐԴՑԻԱԿԱՆ Միութեան Ֆրանսայի շրջանի 19րդ պատգամաւոր. ժողովը պիտի գումարուի 15 եւ 16 Օգոստոս, Կատանի մէջ, Պառ-Ռեսթօրան Փիպելօ, Ավընիւ տը Նիս :

Առաջին նիստը կը բացուի 15 Օգոստ. շաբաթ առաւօտ ժամը 9ին : Պատգամաւորներէն կը խնդրուի ճշդապահ ըլլալ : Մուտքը ազատ է բոլոր հայրենակիցներուն :

---

### ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ

Ժողովուրդի դիւրութեան համար Մարսէյլի Առաջնորդարանը առժամապէս փոխադրուած է՝

26, Rue des Convalescents Tél. : 2'-57 -58

---

դիր մը ներկայացուց։ Ա) Հաւատոյ հանդանակ մը՝ հիմնուած միջամերիկեան դըրութեան վրայ եւ որուն մէջ պէտք է գտնել Քարայիպներու դժուարին կացութեան լուծումը։ Բ) Հիմնել «առժամեայ յատուկ յանձնախումբ մը» որ պէտք է պատրաստէ Քարայիպներու հարցերուն տեղեկագիրը միջամերիկեան յառաջիկայ ժողովին ներկայացնելու համար (Էքուաթոր՝ Փետրուարին)։ Գ) Նախարարը կ'առաջարկէ որ Խաղաղութեան Միջամերիկեան Կոմիտէն (որ գոյութիւն ունի արդէն) կարենայ ուսումնասիրել Քարայիպներու խնդիրներու նման հարցեր երբ տակաւին անոնք չեն վտանգեր աշխարհի խաղաղութիւնը։

———o———

ՊԱՂՏԱՏԻ ձայնասփիւռը կը հաղորդէ թէ զօր. Նաղըմ էլ Թապաք Ճալիի եւ իր մեղսակիցներուն դատավարութիւնը բացուած է։ Թապաք Ճալի բանակին երկրորդ զօրաբաժնին ընդհանուր հրամանատարն էր Մուսուլի ըմբոստութեան ատեն։ Հակառակ ըմբոստութեան պարագլուխ գնդապետ Շավաֆի այն յայտարարութեան թէ Թապաք Ճալի իր հաւանութիւնը տըւած էր, այս վերջինը հաւատարմութեան գիր մը ուղղած էր զօր. Քասըմի։ Ցետագային սակայն զինուորական ատեանի դատախազը պահանջած էր անոր ձերբակալութիւնը «իբր մեղսակից Մուսուլի դաւադրութեան»։

ՈՒՈՇԻՆԿԹԸՆԻ պաշտօնական աղբիւրներու համաձայն, հաւանական կը նկատուի որ Այզընհաուըր տեսակցութիւն մը ունենայ, Փարիզի մէջ, Թուրքիոյ Վարչապետ՝ Մենտերէսի հետ, որուն պիտի ընկերանայ նաեւ Արտաքին նախարար՝ Ֆաթին Զօրլու։

ԱՄԵՐԻԿԵԱՆ շարժանկարի ընկերութիւն մը յայտարարած է թէ Քրիստոսի կեանքը պատկերացնող ժապաւէն մը պիտի պատրաստէ շատ մօտ ատենէն՝ ճոխ բեմադրութեամբ մը։ Գլխաւոր դերակատարներուն թիւը պիտի ըլլայ 150 եւ երեւակներուն ընդհանուր թիւը 50.000։ Ժապաւէնը պիտի կոչուի «Որդին Աստուծոյ» եւ անոր պատրաստութեան համար պիտի ծախսուի 15 միլիառ Ֆրանքի գումարը, որ աննախընթաց է շարժանկարի պատմութեան մէջ։ Ընկերութեան նախագահը կը նախատեսէ որ սկզբնական երեք տարուան մէջ, ժապաւէնին շահագործումէն 150 միլիոն տոլար պիտի շահին։

ՀՆԴԿԱՍՏԱՆ իր անկախութեան տասներկուերորդ տարեդարձը կը տօնէ, Օգոստոս 15ին։ Անգլիական տիրապետութիւնը սկսած է 1757ին, Փլասէի ճակատամարտով եւ ծաւալելով, տեւած մինչեւ 1947։ Երկու դար պէտք եղած է որպէսզի, 1880ին հիմնուած հնդկական ազգային կուսակցութիւնը յաջողի իր նպատակին մէջ՝ ձերբազատուիլ բրիտանական լուծէն։

ԱՆՐԻ ԿԱՌԱ ֆրանսական շարժանկարի ծանօթ դերասանը, մեռաւ Իէռի հիւանդանոցը, 57 տարեկանին։ Վերջին տարիներուն առողջութիւնը բոլորովին կորսնցուցած էր եւ շատ թշուառ կեանք մը ունէր։

## Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾՆԱՅ ՏՕՆԸ

### ՓԱՐԻԶ

Այս կիրակի Փարիզի Ս. Յովհ.-Մկրտիչ եկեղեցւոյն մէջ պիտի մատուցուի հանդիսաւոր պատարագ եւ պիտի կատարուի խաղողի աւանդական օրհնութիւնը եւ բաշխումը։

Բչ. օր պատարագ մեռելոցի։

Հայ հասարակութիւնը կը հրաւիրուի ներկայ ըլլալ։



ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Մօղեան եւ Խաչեան ընտանիքները շնորհակալութիւն կը յայտնեն բոլոր անոնց որոնք իրենց ցաւակցութիւնը յայտնեցին ողբացեալ՝

ԱՅՐԻ ՏԻԿԻՆ ԱՐՇԱԼՈՅՍ ԺԱՄԿՈՉԵԱՆԻ

մահուան առթիւ։

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

ՄԱՐՍԷՅԼ.— Վասպուրականի Հայրենակցական Միութիւնը, բոլոր հայրենակիցներուն անունով, խորին ցաւակցութիւններ կը յայտնէ այրի Տիկին Վարսենիկ Աչճիպաշեանի եւ զաւկին՝ Ցարութիւնի, Տէր եւ Տիկին Ալեքսան Գապայեանի, ինչպէս նաեւ Վաղարշակին եւ բոլոր պարագաներուն, ողբացեալ

ԱՐՇԱԿ ԱՃՃԻՊԱՇԵԱՆԻ

կսկծալի մահուան առթիւ։

Հայրենակց. Միութիւնս փոխան ծաղկեպսակի կը նուիրէ Միութեանս հիւանդ եւ կարիքաւոր ընտանիքներուն 2000 ֆր.։ Պ. Վարդան Պանտիկեան, Պ. Գայիկ Շալճեան եւ Պ. Յովհաննէս Հացագործեան 1000ական ֆրանք։

## ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ Ս. ԽԱՉ ԵԿԵՂԵՑԻ

10 bis, RUE THOUIN

Այս Կիրակի, Տօն Աստուածածնի Վերափոխման, ԳԵՐՊ. ԱՄԱՏՈՒՆԻ կը պատարագէ ժամը 10,30ին։

Խաղողօրհնէք յաւարտ պատարագի։

**ՉԵԽ ՖԻԼԱՐՄՈՆԻՔ.** Նուագախումբը մերժած է մասնակցիլ Էտինպուրկի փառատօնին, հակառակ անոր որ նախապէս պայմանագիր ստորագրած էր: Չեխերուն պատճառաբանութիւնը այն է որ հունգար ջութակահարուհի՝ Եոհաննա Մառցի, որուն հետ պիտի նուագէր չեխ նուագախումբը, համայնավար չէ:

**ՖՐԱՆՍԱԿԱՆ** Հասարակապետութիւնը, ստեղծուած 1958 Սեպտ. 28ի հանրաքուէով, կը բաղկանայ 13 հանրապետութիւններէ, որոնց բնակչութեան ընդհանուր թիւը կը հասնի 84 միլիոնի:

**ԿԻՆԷԻ** Հանրապետութեան Նախագահը՝ Սէքու Թուրէ Լոնտոն հրաւիրուեցաւ կառավարութեան կողմէ:

**ՄԻԱՑԵԱԼ ՆԱՀԱՆԳՆԵՐՈՒ** հիւսիս-արեւմուտքը, Ապառաժուտ Լեռներէն մինչեւ Խաղաղական ովկիանոսը տարածուող երկրամասը շատ ծանր երկրաշարժի մը ուերները կրած է: Ցնցումները այնքան ուժգին եղած են որ լեռներ տեղափոխուած, գետեր իրենց ընթացքէն ելած են: Գիւղեր հիմնայատակ եղած են, Ուէսթ Եըլոսթոնի ազգային նշանաւոր ծառաստանէն 30 մղոն անդին, Հէպկընի ջրելեկտրական մեծ ամբարտակի կառոյցը վտանգուած է, որմնադրութեանը կրած ճեղքուածքներուն պատճառով: Տեղ տեղ գետերը իրենց գնացքնէ ելլելով, դաշտ ու հովիտ ողողած, բերքերը փճացուցած են: Նիւթական վնասները շատ մեծ են: Բարեբախտաբար, ցարդ ճշդուած մարդկային զոհերու թիւը համեմատաբար քիչ է: Անակնկալ, նոր ու շատ աւելի մեծ աղէտներու առաջքն առնելու համար, օդանաւային անընդհատ հսկողութեան տակ է բոլոր վտանգուած երկրամասը:

**ՊՈՆԻ** իշխանութիւնները շատ դժգոհ են Ֆերհաթ Ապպասի բրած յայտարարութենէն Տեր Շփիկըլ թերթին: Ալժերիական «կառավարութեան վարչապետը» բսած էր թէ Գերմանիան կ'օժանդակէ Ֆրանսայի՝ Ալժերիոյ պատերազմին համար: Պոնի մէջ կը յիշեցնեն թէ Անդրծովեան հողամասերու բարգաւաճման համար, Հասարակաց Շուկայի հիմնադրամին Գերմանիա 200 միլիոն տոլար տուած է, հինգ տարուան համար, բայց Ֆրանսա խոստացած է Ալժերիոյ համար չօգտագործել այդ հիմնադրամէն տրամադրուած գումարները:

**ՆԱԽԱԳԱՀ ԱՅԶԸՆՀԱՈՒԸՐ** Օգոստոս 26ին պիտի հասնի Պոն, փոխանակ Օգոստոս 27ի, որպէսզի մէկ օր հանդստանայ Դաշնակցային Գերմանիոյ մայրաքաղաքը որ կը պատրաստուի մեծ շուքով ընդունելու Նախագահը:



## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Տէր եւ Տիկին Արտ Թէրզեան եւ զաւակները (Նիւ Եորք), Տէր եւ Տիկին Լեւոն Կազէլեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Եդուարդ Կազէլեան եւ զաւակները (Տրակինեան), Տէր եւ Տիկին Հրանդ Թէրզեան (Նիւ Եորք); Տէր եւ Տիկին Սուրէն Թէրզեան եւ զաւակները (Ամերիկա), Տէր եւ Տիկին Սարգիս Գրիգորեան (Ռումանիա),

Խորին շնորհակալութիւններ կը յայտնեն բոլոր անոնց որոնք անձամբ, նամակով եւ հեռագրով իրենց ցաւակցութիւնը յայտնեցին

Արժանապատիւ Տէր
ՍԱՀԱԿ Աւագ Քհնյ. ՇԱՄԼԵԱՆԻ

վախճանումին առիթով:

Սրտայոյզ երախտագիտական շնորհակալութիւններ մասնաւորապէս Սէն Ժերոմի Ս. Սահակ Մեսրոպ եկեղեցւոյ Թաղական Խորհուրդի անձնուէր անդամներուն, քահանայ հայրերուն, ինչպէս նաեւ Փրատոյի, Պօմոնի սարկաւագներուն եւ դպիրներուն որոնք դմայլելի եւ հոգեհունչ երգեցողութիւններով արժանավայել փայլ մը տուին մեր ողբացեալ Տէր Հօր օծումին եւ թաղման արարողութիւններուն, մխիթարելով մեր սգակիր սրտերը:

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ ՊՕՄՈՆԻ ՄԷՋ

ՄԱՐՍԷՅԼ.— Այրի Տիկին Հայկանոյշ Երամեան եւ բոլոր պարագաները կը ծանուցանեն թէ՝ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի կիրակի առաւօտ Պօմոնի Ս. Գր. Լուսաւորիչ եկեղեցւոյ մէջ, իրենց ողբացեալ ամուսնոյն եւ ազգականին

ՄԻՆԱՍ ԵՐԱՄԵԱՆԻ

հոգւոյն ի յիշատակ, անոր մահուան քառասունքին առթիւ:

Կը հրաւիրուին հանգուցեալին յիշատակը յարգողները:



Imprimerie Spéciale
du Journal « Haratch »

## ԴՊՐՈՑ. ՏԻԿՆԱՆՑ ՎԱՐԺԱՐԱՆ

1959-1960ի դպրոցական տարեշրջանի արձանագրութիւնները սկսած են: Ամէն անոնք որ կը փափաքին իրենց զաւակները արձանագրել, պէտք է փութան այժմէն իսկ դիմել Հաստատութեան Տնօրէնութեան:

Դպրոցասէրը կը հետեւի պետական լիսէներու պաշտօնական ծրագրին, աշակերտուհիները կը պատրաստէ պրէվէի եւ պաքալօրէայի քննութիւններուն, տալով նաեւ անոնց հայեցի դաստիարակութիւն, հայերէնի, գրականութեան, պատմութեան եւ կրօնի ծանօթութիւններով:

Դիմել՝ 1 Պուլվ- տիւ Նօր, Լը Րէնսի:
Հեռաձայն՝ Լը Րէնսի 172:



## ՀԱՅ ԱՒԵՏԱՐԱՆԱԿԱՆ ՄԿՐՏՉ. ԵԿԵՂԵՑԻ ՄԱՐՍԷՅԼ

Պաշտամունք՝ այս կիրակի, Սէն Ժէրոմ, ժամը 9,30ին: Ռիւ Ժէմափ՝ ժամը 10,45ին:

## ՓԱՐԻԶԻ ՀԱՅ ԱՒԵՏԱՐԱՆ. ԵԿԵՂԵՑԻ

8 bis, Rue des Ternes

Այս կիրակի առաւօտ ժամը 10.45, կը խօսի Պատուելի ԳԱՅԱՅԵԱՆ

## ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ

Նոր արձանագրութիւնները կը շարունակուին 1959-1960 ուսումնական տարեշրջանին համար:

Իրենց զաւակները արձանագրել փափաքող ծնողները փութան դիմել Տնօրէնութեան, գրաւոր կամ հեռաձայնով:

Collège Arménien S. Moorat
26, Rue Troyon - SEVRES (S & O.) Tél.: OBS. 18-28

Վարժարանի անցեալ տարուան աշակերտներուն ծնողներուն ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ կը յանձնուի.—

Եթէ մինչեւ Սեպտեմբեր 8 չնորոգեն իրենց զաւակ՝ներուն արձանագրութիւնը, Տնօրէնութիւնը ի հարկին, ազատ է անոնց տեղերը յատկացնել նոր արձանագրութիւններու. Հետեւաբար, այդ թուականէն առաջ պէտք է պատասխանեն, Տնօրէնութեան՝ Մայիսի մէջ ղրկած շրջաբերականին:

Շ. ՄԻՍԱՔԵԱՆ

# Օրեր եւ Ժամեր

ՊԱՂՏԱՏԻ մէջ մահուան դատապարտուեցան հինգ սպաներ եւ մէկ քաղաքային որոնք մասնակցած էին Մուսուլի ապստամբութեան: Գերագոյն ատեանը ցկեանս տաժանակիր աշխատանքի դատապարտեց ուրիշ երեք սպաներ:

ՈՒՈՇԻՆԿԹԸՆԷՆ Արտաքին նախարարութիւնը կը յայտարարէ թէ բացարձակապէս լուր չունի Խրուշչեւի մէկ նոր առաջարկէն՝ Պերլինի խնդրին լուծման համար:

ՉԵԽՈՍԼՈՎԱՔԻՈՅ համայնավար կուսակցութեան պաշտօնաթերթը՝ Ռուտէ Փռավօ անդրադառնալով վարչապետ Միշէլ Տըպրէի ճառին, կը գրէ թէ Ֆրանսա նեղ կացութեան մատնուած է ոչ միայն ալժերիական քաղաքականութեան պատճառով, այլ նաեւ, որովհետեւ ծայրայեղ աջ քաղաքականութիւն մը կը վարէ այսօր, Պոնի մարդոց հետ:

ՊԱՐՉԵԼՈՆԱՅԻ մօտ արկած մը ունեցաւ անգլիական օդանաւ մը որ փշուր փշուր եղաւ: 33 ճամբորդները որոնց 23ը անգլիացի ուսանողներ՝ մեռան:

ԼՈՆՏՈՆԷՆ կը հաղորդեն թէ միջազգային մթնոլորտին բարելաւումը թոյլ կուտայ խորհրդային քաղաքացիներուն որ քիչ մը խնդան: Ահա՛, Մոսկուայի փողոցներուն մէջ շրջող վերջին պատմութիւնը. — Երկու տեսակ Ամերիկացիներ կան՝ լաւատեսները եւ յոռետեսները: Առաջինները ռուսերէն սորվեցնել կուտան իրենց զաւակներուն, իսկ միւսները ··· չինարէն:

ՔՈՒՊԱՅԻ վարչապետը Գասթրօ յայտարարած է իտալական թերթի մը թէ ինք՝ բռնատէր մը չէ եւ կը նախընտրէ Կառիպալտի մը քան Մուսոլինի մը ըլլալ:

ՖՐԱՆՍԱՅԻ ճամբաներուն վրայ արկածներու հետեւանքով, Օգոստ. 14էն 17, 77 հոգի մեռած եւ 1877 հոգի վիրաւորուած են:

ՆՈՒԷՐ ՈՒԽՏԻ ՄԸ ԱՌԹԻՒ

Մարսէյլէն Տիկին Արմենուհի Ալոյեան Հայաստան երթալով եւ իր ծնողքը տեսնելուն ուխտին ի կատարումն, վերադարձին 2000 Ֆր. կը նուիրէ «Յառաջ»ին եւ 1000 Ֆր. «Հայ-Բոյժ»ին:

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Հ.Բ.Ը.Մ.ի Կատանի մասնաճիւղը իր բոլոր անդամներուն կողմէ սրտագին ցաւակցութիւն կը յայտնէ Յովհաննէսեան ընտանիքին (Կատան եւ Լիոն) իրենց սիրեցեալ Մարտիրոս Յովհաննէսեանի կսկծալի մահուան առթիւ, շնորհակալութիւն նաեւ Սարգիս Յովհաննէսեանի 5000 ֆրանք նուիրատուութեան համար:

ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ.— Համա-Խարբերդցիական Միութեան Մարսէյլի եւ Վիէնի մասնաճիւղերը իրենց խորին ցաւակցութիւնը կը յայտնեն այրի Տիկին Խարոյեանի (Լիոն), Տէր եւ Տիկին Ս. Ալաւդեանի եւ Արզումանեան ընտանիքներուն (Մարսէյլ), ինչպէս նաեւ իրենց ընտանեկան բոլոր պարագաներուն, իրենց ամուսնոյն, եղբօր եւ զարմիկին՝

ԿԻՐԱԿՈՍ ԽԱՐՈՅԵԱՆԻ

մահուան առթիւ, որ տեղի ունեցաւ 12 Օգոստ. 1959, Լիոնի մէջ:



Imprimerie Spéciale
du Journal « Haratch »

ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ ՊՕՄՈՆԻ ՄԷՋ

ՄԱՐՍԷՅԼ.— Այրի Տիկին Հայկանոյշ Երամեան եւ բոլոր պարագաները կը ծանուցանեն թէ՝ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի կիրակի առաւօտ Պօմոնի Ս. Գր. Լուսաւորիչ եկեղեցւոյ մէջ, իրենց ողբացեալ ամուսնոյն եւ ազգականին

ՄԻՆԱՍ ԵՐԱՄԵԱՆԻ

հոգւոյն ի յիշատակ, անոր մահուան քառասունքին առթիւ:

Կը հրաւիրուին հանգուցեալին յիշատակը յարգողները:

ԴՊՐՈՑ. ՏԻԿՆԱՆՑ ՎԱՐԺԱՐԱՆ

1959 – 1960ի դպրոցական տարեշրջանի արձանագրութիւնները սկսած են: Ամէն անոնք որ կը փափաքին իրենց զաւակները արձանագրել, պէտք է փութան այժմէն իսկ դիմել Հաստատութեան Տնօրէնութեան:

Դպրոցասէրը կը հետեւի պետական լիսէներու պաշտօնական ծրագրին, աշակերտուհիները կը պատրաստէ պրէվէի եւ պաքալօրէայի քննութիւններուն, տալով նաեւ անոնց հայեցի դաստիարակութիւն, հայերէնի, գրականութեան, պատմութեան եւ կրօնի ծանօթութիւններով:

Դիմել՝ 1 Պուլվ- տիւ Նօր, Լը Րէնսի:
Հեռաձայն՝ Լը Րէնսի 172:

ՓԱՐԻԶԻ ՀԱՅ ԱՒԵՏԱՐԱՆ. ԵԿԵՂԵՑԻ

8 bis, Rue des Ternes

Այս կիրակի առաւօտ ժամը 10.45, կը խօսի Պատուելի ԳԱՅԱՅԵԱՆ



ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

ԱԼՊԵԱՆ ՌԱԶՄԻԿՆԵՐՈՒ ՀԵՏ

ԳՐԵՑ

ԱՐԱՄԱՅԻՍ ՍՐԱՊԵԱՆ

Դիմել հեղինակին՝

Via Pacini 30, MILANO

ՀԱՅ ԱՒԵՏԱՐԱՆԱԿԱՆ ՄԿՐՏՉ. ԵԿԵՂԵՑԻ
ՄԱՐՍԷՅԼ

★

Պաշտամունք՝ այս կիրակի, Սէն Ժէրոմ, ժամը 9,30ին: Ռիւ Ժէմափ՝ ժամը 10,45ին: Կը խօսի պատուելի Հելվաճեան:

ՊԵԼԺԻԱ

Կայանի տղաքը կը խնդրեն որ հաճիք ներկայ ըլլալ իրենց

ՄԵԾ ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍԻՆ

որ տեղի պիտի ունենայ Գայէնհօֆ 21, Ավրնիւ Մաքս-Թեմմէրման, Հալտ, կիրակի Օգոստոս 30ին, ժամը 11էն սկսեալ:

ՊԱՐ, ԵՐԳ, ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

ՊԻՒՖԷ, ԽՄԻՉՔ

ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ

Նոր արձանագրութիւնները կը շարունակուին 1959–1960 ուսումնական տարեշրջանին համար:

Իրենց զաւակները արձանագրել փափաքող ծնողքները փութան դիմել Տեսչութեան, գրաւոր կամ հեռաձայնով:

Collège Arménien S. Moorat
26, Rue Troyon - SEVRES (S & O.) Tél : OBS. 18-28

Վարժարանի անցեալ տարուան աշակերտներուն ծնողքներուն ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ կը յանձնուի.—

Եթէ մինչեւ Սեպտեմբեր 8 չնորոգեն իրենց զաւակ՛ներուն արձանագրութիւնը, Տեսչութիւնը ի հարկին, ազատ է անոնց տեղերը յատկացնել նոր արձանագրութիւններու. Հետեւաբար, այդ թուականէն առաջ պէտք է պատասխանեն, Տեսչութեան՝ Մայիսի մէջ ղրկած շրջաբերականին:

Շ. ՄԻՍԱՔԵԱՆ

# Օրեր եւ Ժամեր

*ՄՈՍԿՈՒԱՅԻ մէջ համաձայնութիւն մը կնքուած է Իրաքի տնտեսական պատուիրակութեան եւ Խորհ. Միութեան նախարարաց ժողովի պատկան մարմնին միջեւ: Շուտով Խորհ. Միութիւնը Իրաքի տրամադրութեան տակ պիտի դնէ փորձագէտներու ստուար խումբ մը, որպէսզի հիւլէական բաղդ մը չինեն, հիւլէական ուժի խաղաղ գործածութեան փորձեր կատարելու համար: Այս համաձայնութեան բերումով, Խորհ. Միութիւնը իր վրայ առած է նաեւ գիտական բարձրագոյն ուսումի հաստատութեանց կազմակերպութիւնը Իրաքի մէջ, հետազօտութեանց եւ գործադրութեան փորձարաններու ստեղծումը՝ ի տես Իրաքցի մասնագէտներու պատրաստութեան:*

*ՓԱՐԻԶԻ Թաղապետական տեղեկագիրը կը յայտնէ թէ 1958ին քողազերծուած եւ քննուած են 359 առեւտրական անկանոն գործառնութիւններ, 16 միլիառ 600 միլիոն ֆրանքի արժողութեամբ: Գործուած զեղծումներուն 137 հատը դատական հետապնդումի յանձնուած են: Ընթացիկ տարուան առաջին վեցամսեակին, երեւան հանուած են առանց հաշուեցոյցի կատարուած 367 առուծախեր եւ ամբաստանուած են 70 հոգի:*

*ԹՈՒՆՈՒԶԻ եւ Ֆրանսայի ամիսներէ ի վեր կատարած բանակցութիւնները դրական արդիւնքի չեն յանգած՝ ոչ տնտեսական եւ ոչ ալ ելեւմտական մարզերուն մէջ: Այս պատճառով եւ կարգ մը այլ դժգոհութիւններով, նախագահ Պուրկիպա՝ իր չաբաթական ասուլիսին ընթացքին, յայտարարեց թէ յառաջիկայ Հոկտեմբերէն սկսեալ «Ֆրանսայի եւ Թունուզի մաքսային միութիւնը պիտի ջնջուի: Եթէ այդ ժամանակաշրջանին Ֆրանսայի հետ վաճառականական նոր համաձայնութիւն մը կարելի չըլլայ կնքել եւ կամ եթէ Ֆրանսան մեր մաքսային անջատումին փոխարէն անընդունելի միջոցներու դիմէ, պատրաստ ենք մինչեւ իսկ ֆրանքի դրամական գօտիէն դուրս ելլել: Մեր փափաքն է բոլոր աշխարհի հետ գործակցիլ եւ մեր ապագայ յաջողութիւնը ապահովել»: Նախագահ Պուրկիպայի որոշումը եւ յայտարարութեան ոճը մասնաւոր յուզում չեն պատճառած ֆրանսական պատուիրակութեան, որ կը նախատեսէ թէ, հակառակ երեւոյթներուն, կարելի պիտի ըլլայ մօտալուտ եւ երկուստեք ընդունելի ընդհանուր համաձայնութիւն մը կնքել:*

*ԻՍՐԱՅԷԼԻ զանազան քաղաքներու եւ մասնաւորաբար Վատի-Սալիպի մէջ, օրերէ ի վեր դժգոհութեան զանգուածային ցոյցեր կը կատարուին պետական իշխանութեանց դէմ: Ցուցարարներու պարագլուխները, առանց բացառութեան, Հիւսիսային Ափրիկէէն գաղթածներ են, որոնք կը մեղադրեն տեղական իշխանութիւնները թէ երկրին մէջ զարտուղութիւն կը դրուի, ըլլայ աշխատանքի, ըլլայ ընկերային զանազան պարագաներու մէջ՝ հին ու նոր գաղթականներուն վերաբերեալ: Բողոքի ամբոխային խլրտումները այնպիսի համեմատութիւններ ստացած էին, որ կառավարութիւնը ստիպուեցաւ քննիչ յանձնախումբ մը նշանակել: Այս յանձնախումբին զեկոյցը հաստատած է թէ գաղթականներուն բողոքները անհիմն չեն եւ հրաւիրած կառավարութիւնը, որ լրջօրէն նկատի առնէ Հիւսիսային Ափրիկէցի հրեայ գաղթականներուն գանգատներն ու գոհացում տայ անոնց արդար պահանջներուն՝ եթէ կ'ուզէ առաջքն առնել յետագային վտանգաւոր ընկերային կացութեան մը:*

*ԿՐԸՆՈՊԼԸ.— Կաղ. Խաչի մասնաճիւղը շնորհակալութեամբ ստացած է ի նպաստ իր դպրոցին, հետեւեալ նուէրները.— Օր. Սրբուհի Ալիքեանի եւ Յ. Գասպաքճեանի ամուսնութեան առթիւ՝ Տէր եւ Տիկին Ալիքեանէ 3000, Տէր եւ Տիկին Քիւրքճեանէ 2000 ֆրանք:*

*Օր. Ազատուհի Փիլաւճեանի եւ Ժ. Ներկիզեանի ամուսնութեան առթիւ՝ Տէր եւ Տիկին Փիլաւճեանէ եւ Տէր եւ Տիկին Ներկիզեանէ 3000 ֆրանք:*

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

×

*Տէր եւ Տիկ. Տիգրան Ներկիզեան եւ Տէր եւ Տիկ. Մկրտիչ Փիլաւճեան սրտագին շնորհակալութիւն կը յայտնեն բոլոր անոնց, որոնք իրենց զաւակներուն Ժանին Փիլաւճեանի եւ Ժօզէֆ Ներկիզեանի ամուսնութեան առթիւ, իրենց ուրախութեան մասնակից եղան իրենց ներկայութեամբ, ծաղկեփունջերով, հեռագիրներով եւ նամակներով, եւ այս առթիւ 2000 ֆրանք կը նուիրեն «Յառաջ»ի բարգաւաճման ֆոնտին:*

### ՀԱՅ ԱՒԵՏԱՐԱՆԱԿԱՆ ՄԿՐՏՉ. ԵԿԵՂԵՑԻ
### *ՄԱՐՍԷՅԼ*

×

*Պաշտամունք՝ այս կիրակի, Սէն Ժէրոմ, ժամը 9,30ին: Ուխ. Ժէմափ՝ ժամը 10,45ին:*

*Կը խօսի* Վերապատուելի Հելվաճեան:

Imprimerie Spéciale
du Journal « Haratch »

### *ԴԱՇՏԱ – ՊԱՐԱՀԱՆԴԷՍ*

Սեբաստիոյ Նահանգային Մուրատ Ուսումնասիրացի Մարսէյլի Մ. ճիւղին կողմէ այս կիրակի ամբողջ օրը Սէն-Ժիւսթ, ՊԱՌ ՏԻՒ ՇԱԼԷ, Ավընիւ Ֆորօ, ծառաշուք եւ օդասուն ընդարձակ պարտէզին մէջ:

### *ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԲԱԺԻՆ*

Կերուխում — շամփուրով խորոված Սովորական գիներով:

### *ՀԱՃԵԼԻ ՄԹՆՈԼՈՐՏ*

Ծանօթ.— *Քանըպիէրէն* փալէ տը լա Շօսիւրի *առջեւէն առնել 53 թիւը եւ իջնել* Սէն-Ժիւսթ:

ՄՈՒՏՔԸ ԱԶԱՏ Է

### ՓԱՐԻԶԻ ՀԱՅ ԱՒԵՏԱՐԱՆ. ԵԿԵՂԵՑԻ

8 bis, Rue des Ternes

*Այս Կիրակի առաւօտ ժամը 10.45, կը խօսի Պատուելի ԳԱՅԱՅԵԱՆ*

ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

## Անուշաւան

Թիւ 10
ԱՆԴՐԱՍՏԱՆ Գրականութեան
Արուեստի ԱՆԴԱՍՏԱՆ
Հայ եւ Օտար գրականութեան
ԱՆԴԱՍՏԱՆ
*Խմբագիր*
*ԲԻՒԶԱՆԴ ԹՕՓԱԼԵԱՆ*
46, Rue Richer - PARIS (9e)
Գին՝ 1200 ֆրանք
Արտասահման 4 տոլար

Օգոստոս ամսուան ընթացքին

ՀՐԱՆՏ ՍԱՄՈՒԷԼԵԱՆ ԳՐԱՏՈՒՆԸ
51 Rue Monsieur-le-Prince, Paris (6e)
ԲԱՑ Է ՄԻԱՅՆ ԿԷՍՕՐԷ ՎԵՐՋ
ԺԱՄԸ 2 –6,30
ՓԱԿ Է ԵՐԿՈՒՇԱԲԹԻ

### *ՊԵԼԺԻԱ*

*Կայանի տղաքը կը խնդրեն որ հաճիք ներկայ ըլլալ իրենց*

## ՄԵԾ ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍԻՆ

որ տեղի պիտի ունենայ Գայէնիոֆ 21, Ավընիւ Մաքս-Թեմմէրման, Հայտ, կիրակի Օգոստոս 30ին, ժամը 11էն սկսեալ:

*ՊԱՐ, ԵՐԳ, ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ*

ՊԻՒՖԷ, ԽՄԻՉՔ

### ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ

*Նոր արձանագրութիւնները կը շարունակուին 1959–1960 ուսումնական տարեշրջանին համար:*

*Իրենց զաւակները արձանագրել փափաքող ծնողքները փութան դիմել Տեսչութեան, գրաւոր կամ հեռաձայնով:*

Collège Arménien S. Moorat
26, Rue Troyon - SEVRES (S & O.) Tél.: OBS. 18-28

*Վարժարանի անցեալ տարուան աշակերտներուն ծնողքներուն ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ կը յանձնուի.—*

*Եթէ մինչեւ Սեպտեմբեր 8 չնորոգեն իրենց զաւակներուն արձանագրութիւնը, Տեսչութիւնը ի հարկին, ազատ է անոնց տեղերը յատկացնել նոր արձանագրութիւններու. Հետեւաբար, այդ թուականէն առաջ պէտք է պատասխանեն, Տեսչութեան՝ Մայիսի մէջ ղրկած շրջաբերականին:*

### *ԴՊՐՈՑ. ՏԻԿՆԱՆՑ ՎԱՐԺԱՐԱՆ*

1959 – 1960ի *դպրոցական տարեշրջանի արձանագրութիւնները սկսած են: Անոնք որ կը փափաքին իրենց զաւակները արձանագրել, պէտք է փութան այժմէն իսկ դիմել Հաստատութեան Տնօրէնութեան:*

*Դպրոցասէրը կը հետեւի պետական լիսէներու պաշտօնական ծրագրին, աշակերտուհիները կը պատրաստէ պրէվէի եւ պաքալօրէայի քննութիւններուն, տալով նաեւ անոնց հայեցի դաստիարակութիւն, հայերէնի, գրականութեան, պատմութեան եւ կրօնի ծանօթութիւններով:*

*Դիմել՝* 1 Պուլվ– տիւ Նօր, Լը Րէնսի:
*Հեռաձայն՝* Լը Րէնսի 172:

ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

## ԱԼՊԵԱՆ ՌԱԶՄԻԿՆԵՐՈՒ ՀԵՏ

ԳՐԵՑ

ԱՐԱՄԱՅԻՍ ՍՐԱՊԵԱՆ

Դիմել հեղինակին՝
Via Pacini 30, MILANO

**ԻԶՄԻՐԻ** 28րդ միջազգային տօնավաճառին բացումը կատարեց արեւմտեան Գերմանիոյ Տնտեսական նախարար՝ Տոքթ. Էհարտ, վարչապետին ներկայութեան: 19 երկիրներ, որոնց կարգին Ֆրանսա, կը մասնակցին:

**ԼԱՈՍԻ** Թագաւորին առողջական վիճակը շատ ծանր է եւ ստիպուեցաւ խնամակալ մը ընտրել:

**ԽՈՐՀ. ՄԻՈՒԹԵԱՆ** վարչապետը Խրուշչեւ, Սեպտեմբեր 18ին պիտի խօսի ՄԱԿի ապլամօղովին մէկ նիստին:

**ՄԻԱՑԵԱԼ ՆԱՀԱՆԳՆԵՐԸ** 12 միլիոն տոլարի վարկ մը բացած են Արաբ Միացեալ Հանրապետութեան:

**ԸՆԿԵՐԱՅԻՆ ՏԱԳՆԱՊՆԵՐՈՒ** հետեւանքով, 1958ին 1.137.741 օր գործադուլ եղաւ: Վերջին 11 տարիներու նուազագոյն թիւն է այս: Բարձրագոյն թիւը 1947ին էր, երբ համայնավար դրդումներով 22.673.285 գործադուլի օրեր կորսուեցան, 2.997.559 բանուորներով:

**ՓԱՐԻԶԻ** Մաքսիմս նշանաւոր ճաշարանին Մեթր-տ'Օթէլը Ալպեր, մեռաւ 76 տարեկանին: Փարիզի ամէնէն ծանօթ դէմքերէն էր, որ ճանչցած է միջազգային դէմքեր՝ Աղա Խանէն մինչեւ Վինսըրները:

**ՌՈՒՄԱՆԻՈՅ** ազատագրման 15րդ տարեդարձին առթիւ Մեծ Ժողովին Խորհուրդը որոշեց ներում շնորհել կարգ մը դատապարտեալներու:

**ԽՐԻՄԻ մէջ**, Սեւ Ծովու եզերքը, քաղաքական բազմաթիւ անձնաւորութիւններ «հանգստանալու» գացած են: Խրուշչեւէն զատ, կը կարծուի թէ Կոմուլկա եւ Ուլպրիխթ եւս հոն են:

**ԱՆԳԼԻՈՅ** Մարկարէթ իշխանուհին 29րդ տարեդարձը տօնեց: Այս առթիւ անգլիական թերթ մը իբրեւ խորագիր դրած է.— 29 տարեկան եւ մինակ: Անգլիացի քաջ ծանօթ աստղագէտ մը կը նախատեսէ սակայն թէ իշխանուհին պիտի ամուսնանայ Սեպտեմբեր 17ին:

**ՏԻՒՍԵԼՏՈՐՖԻ** մէջ մէկուկէս տարուան բանտարկութեան դատապարտուեցաւ գերմանական բանակի նախկին ամէնէն ծանօթ սպաներէն մէկը՝ զօր. Հասօ ֆոն Մանթէօյֆըլ: Ամբաստանուած էր, որ 1944ին 19 տարեկան Ուկրանիացի զինուոր մը հրացանազարկ ընել տուած է:

**ԱՐԺԱՆԹԻՆԻ** Հանրապետութեան նախկին նախագահը զօր. Արամպուրու Փարիզ հասաւ, Իսրայէլէն:

**ԱՆԳԼԻԱԿԱՆ** ռմբարձակ օդանաւ մը Վիքթըր մառք, որուն արագութիւնը ձայնէն գերազանց է եւ բոլորովին գաղտնի շինութիւն մըն է, անհետացաւ: Յատկանշական գիծերն են՝ 17.000 մեթր բարձրութեան հասնիլ, ջրածին ռումբ փոխադրել, շրջագիծը՝ 5000 քիլոմեթր տարածութիւնը կ'անցնի: Բոլոր փնտռտուքները ցարդ ապարդիւն անցած են:

### ՄԱՐԶԱԿԱՆ

Ամէն տարի այս եղանակին, Ֆրանսայի մէջ տեղի կ'ունենան լողալու մրցումներ, որոնց գլխաւորներէն մին է Անըսիի լիճին անցքը:

Այս աւանդական մրցումը այս տարի եւս տեղի ունեցաւ Օգոստոս 15ին, որու ընթացքին Վալանսաբնակ մեր հայրենակիցը՝ լողորդ Գէորգ Պօյաճեան, 18 մրցորդներու մէջ, յաջողեցաւ առաջնութիւնը շահիլ, կոտրելով Ֆրանսայի լողորդ Լակրանժի այս մրցման մէջ հաստատած մրցանիշը:

Մրցման սկզբնաւորութենէն իսկ հայ ազգի լողորդը իր մրցակիցներուն վրայ ունեցած է 100 մեթրի առաւելութիւն մը, եւ մրցումը վերջացուցած է 37 վայրկեան 0,5 ժամանակակէտով մը (Լակրանժի ժամանակակէտը՝ 37 վայրկեան 14 էր):

Այսպէսով Գէորգ Պօյաճեան 1959ի շրջանին իր ձեռք բերած յաջողութիւններու պատուոյ տախտակին վրայ կ'աւելցնէ նոր յաղթանակ մը եւս, պատրաստուելով յառաջիկային տեղի ունենալիք Ֆրանսայի ախոյենական մրցումներուն:

## Շ. ՄԻՍԱՔԵԱՆ

# Օրեր եւ Ժամեր

### ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ

Ընկ. Գր. Փափազեանի նշանախօսութեան ուրախ առթիւ Տէր եւ Տիկին Փափազեան կը նուիրեն 5000 ֆր. Շաւիլի եկեղեցիին, 2500 ֆր. Կապ. Խաչի Շաւիլի մասնաճիւղին:

**ՔԼԵՐՄՈՆ ՖԵՐՐԱՆԷՆ** Տէր եւ Տիկին Սարգիս Թիւթիւնճեան 5000 ֆր.՝ Փարիզի Մշակոյթի Տան (ստանալ «Յառաջ»էն), 5000 ֆր.՝ Շաւիլի եկեղեցիին:

### ԴՊՐՈՑ. ՏԻԿՆԱՆՑ ՎԱՐԺԱՐԱՆ

1959 – 1960ի դպրոցական տարեշրջանի արձանագրութիւնները սկսած են: Ամէն անոնք որ կը փափաքին իրենց զաւակները արձանագրել, պէտք է փութան այժմէն իսկ դիմել Հաստատութեան Տնօրէնութեան:

Դպրոցասէրը կը հետեւի պետական լիսէներու պաշտօնական ծրագրին, աշակերտուհիները կը պատրաստէ պրէվէի եւ պաքալօրէայի քննութիւններուն, տալով նաեւ անոնց հայեցի դաստիարակութիւն, հայերէնի, գրականութեան, պատմութեան եւ կրօնի ծանօթութիւններով:

Դիմել՝ 1 Պուլվ– տիւ Նօր, Լը Րէնսի:
Հեռաձայն՝ Լը Րէնսի 172:

### ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Գրիգոր եւ Արմենակ Եսայեան կը փնտռեն իրենց եղբայրը՝ Կարպիս Եսայեան, բնիկ Եօտէմիշցի: Տեղեկութիւն ունեցողները կրնան գրել՝ Տիկին Գոհար Մասադեանի՝

258, Avenue d'Argenteuil Asnieres - Seine




Imprimerie Spéciale

du Journal « Haratch »


### ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ

Նոր արձանագրութիւնները կը շարունակուին 1959–1960 ուսումնական տարեշրջանին համար:

Իրենց զաւակները արձանագրել փափաքող ծնողքները փութան դիմել Տեսչութեան, գրաւոր կամ հեռաձայնով:

Collège Arménien S. Moorat

26, Rue Troyon - SEVRES (S & O.) Tél. : OBS. 18-28

Վարժարանի անցեալ տարուան աշակերտներուն ծնողքներուն ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ կը յանձնուի.—

Եթէ մինչեւ Սեպտեմբեր 8 չնորոգեն իրենց զաւակներուն արձանագրութիւնը, Տեսչութիւնը ի հարկին, ազատ է անոնց տեղերը յատկացնել նոր արձանագրութիւններու. հետեւաբար, այդ թուականէն առաջ պէտք է պատասխանեն, Տեսչութեան՝ Մայիսի մէջ ղրկած շրջաբերականին:



### ՊԵԼԺԻԱ

Կայանի տղաքը կը խնդրեն որ հաճիք ներկայ ըլլալ իրենց

**ՄԵԾ ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍԻՆ**

որ տեղի պիտի ունենայ Գայէնհօֆ 21, Ավրնիւ Մաքս-Թեմմէրման, Հայտ, Կիրակի Օգոստոս 30ին, ժամը 11էն սկսեալ:

ՊԱՐ, ԵՐԳ, ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

ՊԻՒՖԷ, ԽՄԻՉՔ

Շ, ՄԻՍԱՔԵԱՆ

# Օրեր եւ Ժամեր

**ՔՈՐՖՈՒԷՆ** Աթէնք վերադարձին, զօր. Կոխվաս՝ մամուլի միջոցով, կրկին բուռն յայտարարութիւններ կատարեց արք. Մակարիոսի եւ յոյն կառավարութեան դէմ։ Զօրավարը հաստատ մնալով իր տեսակէտին վրայ, Կիպրոսի թշնամին եւ կղզին մէջ տիրող քաղաքական տագնապը միշտ կը վերագրէ Ցիւրիխի եւ Լոնտոնի համաձայնութեանց գործադրութեան։

**ՆԻԿՈՍԻՈՅ** վերջին լուրերուն համաձայն, Կիպրոսի Համայնավար կուսակցութեան կեդրոնական կոմիտէն, մամուլին յանձնուած հաղորդագրութիւնով մը, բողոքած է 1955էն ի վեր կուսակցութիւնը արգիլելէ ենթարկող օրէնքին, ցարդ յետս կոչուած չըլլալուն դէմ։ Հաղորդագրութիւնը կը շեշտէ որ Կիպրոսի մէջ, արք. Մակարիոսէն մինչեւ ամէնէն համեստ կղզեցին ու բանուորը, համաձայն են այդ քաղաքական արգելքին անմիջական ջնջումին համար։ Անգլիական իշխանութիւնները, յոյն եւ թուրք կառավարութիւնները պատասխանատու կը նկատուին այս «բռնատիրական որոշումին» դեռ ի զօրու պահուելուն։

**ԻՏԱԼԻՈՅ** Կրթական նախարարութիւնը նոր ծրագիր մը պատրաստած է հանրային ուսման վերաբերեալ։ Ըստ օրինագծին տրամադրութեանց, 1960 Հոկտեմբեր 1էն սկսեալ, ձրի ուսուցումը պարտաւորիչ պիտի ըլլայ՝ փոխանակ 11ի, ինչպէս է ներկայիս, մինչեւ 14 տարեկան։

**ԽՐՈՒՇՉԵՒ** եօթը քաղաք պիտի պտըտի Ամերիկայի մէջ՝ Ուաշինկթըն, Նիւ Եորք, Լոս-Անճըլըս, Սան Ֆրանսիսքօ, Տիզ Մօյնզ, Այովա եւ Փիթսպըրկ։ Այս այցելութեանց ընթացքին Խրուշչեւի պիտի ընկերանայ ՄԱԿի ամերիկեան պատուիրակը՝ Քապոթ Լոճ։

**ԴԱՇՆԱԿՑԱՅԻՆ ԳԵՐՄԱՆԻԱ** որոշեց իր օժանդակութիւնը բերել Թուրքիոյ տնտեսական եռամեայ ծրագրին։

**ԱՆԳԼԻՈՅ** կարեւոր օրաթերթերէն Մանչեսթըր Կուարտիըն, որոշեց այսուհետեւ միայն Կուարտիըն կոչուիլ։ Լոնտոնի թերթերը կը մտահոգուին եւ կը կարծեն Դէ այս փոփոխութիւնը առաջին քայլ մըն է, եւ ի մօտոյ թերթը լոնտոնեան հրատարակութիւն մըն ալ պիտի ունենայ եւ վտանգաւոր մրցակից մը դառնայ մայրաքաղաքին օրաթերթերուն։

700·000 **ՓԱՐԻԶՑԻՆԵՐ** որոնք արձակուրդի գացած էին, Օգոստոս 23ին մայրաքաղաք վերադարձան։

**ՎԻԱՌԵՃՃԻՈՅԻ** մէջ (Իտալիա) Լուսինի Ռահվիրաներու մարդկային միջազգային դաշնակցութիւն մը հիմնուեցաւ։ Անոնք կը գտնեն թէ անջրպետին մէջ ճամբորդութիւն մը ոչ միայն կարելի է, այլ եւ օգտակար մարդկութեան համար։

**ՆՈՒԱԳԱԽՈՒՄԲԻ** ծանօթ ղեկավար՝ Սըր Թոմըս Պիչըմ Զուիցերիոյ մէջ ամուսնացաւ իր քարտուղարուհիին հետ։ Երիցագոյն ղեկավարը՝ 80 տարեկան է, իսկ կինը՝ 27։

**ՊԱՐՍԻՑ ՇԱՀԸ** պատասխանելով Յորդանանի թագաւորին հրաւէրին, ի մօտոյ Ամման պիտի երթայ։

**ՆՈՐ-ՏԷՀԼԻԷՆ** կը հաղորդեն որ Նեհրու, առաջին անգամ ըլլալով, տեսակցութիւն մը պիտի ունենայ Փաքիստանի նորընտիր Վարչապետ զօրավար Այուպ Խանի հետ։

**ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՄԻՈՒԹԵԱՆ** պետական հրատարակչականը մօտերս պիտի հրատարակէ «Դիւանագիտական Բառարան»ի մէկ նոր տպագրութիւնը, երեք հատոր։ Հրատարակութեան ընդհանուր պատասխանատուութիւնը յանձնուած է տնտեսական գիտութեան վարդապետ՝ Տոքթ. Անտրէ Կրոմիքոյի։ Առաջին հատորը պիտի լոյս տեսնէ 1959ի վերջ, միւս երկուքը՝ 1960ին։ Բառարանին մէջ յօդուածներ պիտի ըլլան դիւանագիտական հարցերու վերաբերեալ։ Կարեւոր մաս մը յատկացուած է յետ-պատերազմեան միջազգային յարաբերութեանց բացատրութեան։

**ԱՐԺԱՆԹԻՆԻ** կառավարութիւնը 30·000 պաշտօնեաներ զործէ հանած է։ Այս ձեւով պետութիւնը տարեկան 2 միլիոն փեսոսի խնայողութիւն մը պիտի ընէ։

**ԾԱՆՕԹ ՔԱՆԴԱԿԱԳՈՐԾ** Եաքոպ Էփըշթայն մեռած է 78 տարեկանին։ Ծնած էր Նիւ Եորք լեհ-հրեայ ծնողքէ։ Իր արուեստը շատ ինքնայատուկ բնոյթ մը ունէր եւ երկար ատեն ընդդիմութեան արժանացած է աւանդապաշտ շրջանակներուն կողմէ։













Imprimerie Spéciale
du Journal « Haratch »

## ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

Տէր եւ Տիկին Անդրանիկ Պօյաճեան, Պետրոս Շմաւոնեանի մահուան առթիւ 3000 ֆր. կը նուիրեն Մոնմորանսիի հանգստեան տան։ (Ստանալ «Յառաջ»էն)։

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Տիկին Հանըմ Շմաւոնեան, Տէր եւ Տիկին Յարութիւն Գայըշեան եւ զաւակը՝ Պ. Էմիլ Ժագլար, ինչպէս նաեւ ընտանեկան պարագաները շնորհակալութիւն կը յայտնեն բոլոր անոնց որոնք անձամբ, գրաւոր կամ փոխան ծաղկեպսակի նուէրներով մասնակցեցան իրենց սուգին՝

**ՊԵՏՐՈՍ ՇՄԱՒՈՆԵԱՆԻ**

կսկծալի մահուան առթիւ։

## ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ

Նոր արձանագրութիւնները կը շարունակուին 1959–1960 ուսումնական տարեշրջանին համար։

Իրենց զաւակները արձանագրել փափաքող ծնողքները փութան դիմել Տեսչութեան, գրաւոր կամ հեռաձայնով։

Collège Arménien S. Moorat
26, Rue Troyon - SEVRES (S & O.) Tél. : OBS. 18-28

Վարժարանի անցեալ տարուան աշակերտներուն ծնողքներուն ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ կը յանձնուի.—

Եթէ մինչեւ Սեպտեմբեր 8 չնորոգեն իրենց զաւակներուն արձանագրութիւնը, Տեսչութիւնը ի հարկին, ազատ է անոնց տեղերը յատկացնել նոր արձանագրութիւններու. հետեւաբար, այդ թուականէն առաջ պէտք է պատասխանեն, Տեսչութեան՝ Մայիսի մէջ ղրկած շրջաբերականին։



## ՊԵԼԺԻԱ

Կայանի տղաքը կը խնդրեն որ հաճիք ներկայ ըլլալ իրենց

**ՄԵԾ ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍԻՆ**

որ տեղի պիտի ունենայ Գայէնհօֆ 21, Ավընիւ Մաքս-Թեմմէրման, Հայտ, կիրակի Օգոստոս 30ին, ժամը 11էն սկսեալ։

ՊԱՐ, ԵՐԳ, ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ
ՊԻՖԷ, ԽՄԻՉՔ

## ԴՊՐՈՑ. ՏԻԿՆԱՆՑ ՎԱՐԺԱՐԱՆ

1959 – 1960ի դպրոցական տարեշրջանի արձանագրութիւնները սկսած են։ Ամէն անոնք որ կը փափաքին իրենց զաւակները արձանագրել, պէտք է փութան այժմէն իսկ դիմել Հաստատութեան Տնօրէնութեան։

Դպրոցասէրը կը հետեւի պետական լիսէներու պաշտօնական ծրագրին, աշակերտուհիները կը պատրաստէ պրէվէի եւ պաքալօրէայի քննութիւններուն, տալով նաեւ անոնց հայեցի դաստիարակութիւն, հայերէնի, գրականութեան, պատմութեան եւ կրօնի ծանօթութիւններով։

Դիմել՝ 1 Պուլվ- տիւ Նօր, Լը Րէնսի։
Հեռաձայն՝ Լը Րէնսի 172։





## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Գրիգոր եւ Արմենակ Եսայեան կը փնտռեն իրենց եղբայրը՝ Կարպիս Եսայեան, ընիկ Եօզէմիշցի։ Տեղեկութիւն ունեցողները կրնան գրել՝ Տիկին Գոհար Մասաղեանի՝

258, Avenue d'Argenteuil Asnieres Seine

ԻՐԱՔԻ Արտաքին նախարարութեան մէկ բանբերը յայտարարած է թէ Իրաք պիտի չմասնակցի Արաբական Լիկայի Ծորհուրդի ժողովին որ կը բացուի Սեպտեմբեր 1ին, Քազապլանքա։

ՅՈՐԴԱՆԱՆԻ մէջ կը շարունակուի հականասերեան պայքարը, հակառակ անոր որ Արաբ Միացեալ Հանրապետութիւնը եւ Յորդանանը վերջերս վերսկսան իրենց դիւանագիտական յարաբերութիւնները։ Ամմանի դատարաններն առջեւ կը դատուին այն սպաները որոնք պետական հարուածով մը ուզեցին Յորդանանը միացնել Արաբ Միացեալ Հանրապետութեան։

ԿԻՆԷԻ պատուիրակութիւնը որ Մոսկուա էր եւ բանակցութիւններ կը վարէր Կրեմլինի հետ, վերջացուց իր աշխատանքները։ Հաղորդակց ցեկոյցը ստորագրեցին՝ Տիալօ (Կինէ), Անաստաս Միկոյեան (Խորհ. Միութիւն)։ Խորհ. Միութիւնը մեծ վարկեր բացած է Կինէի, երկար ժամանակի համար։ Միւս կողմէ Սէքու Թուրէի երկիրը 744 թոն բրինձ եւ 255 թոն ալիւր ստացաւ Միացեալ Նահանգներէն։

ԹՈՒՔԻՒՆ ՏԸ ԼՕԶԱՆ, զուիցերիական կարեւոր օրաթերթը կը գրէ թէ Արեւմուտքի համար մեծ պարտութիւն է եթէ Ֆրանսան հեռանայ Ալժերիայէն.— «Եթէ կ'ուզենք առարկայօրէն եւ իրատեսութեամբ քննել հարցերը, պէտք է զօրավիգ կանգնիլ Ֆրանսայի, նոյնիսկ ցաւ ի սիրտ»։

ԽՐՈՒՇՉԷՒ զոււտ ամերիկեան ճաշ մը պիտի ուտէ Տիզ Մօյնզի մէջ, Տիկին Կարզթի ագարակը։ Ճաշացուցակն է.— Խորոված՝ եզան կողիկի, անոյշ գետնախնձոր, խաշած եգիպտացորեն, խնձորով կարկանդակ։

ՖՐԱՆՍԱՑԻ մշակութային հարցերու նախարարը՝ Անտրէ Մալրօ Ռիօ-տէ-Ժանէյրօ հասաւ երեքշաբթի օր։ Նախարարը պիտի այցելէ Լատին Ամերիկայի զանազան երկիրները։

ԻՏԱԼԻՈՅ Վարչապետը եւ Արտաքին նախարարը Ճափոն պիտի երթան Նոյեմբերին։

ՆԵՀՐՈՒ հաստատեց թէ Չինաստան գիտում բրած է Հնդկաստանի, որպէսզի այս տարի հնդիկ ուխտաւորներ Թիպէթ չերթան։

ԻՏԱԼԻՈՅ ժողովրդավար կուսակցութեան Բիւրօն (արքայական երկու կուսակցութեանց ձուլումը) որոշեց մինչեւ խորհրդարանական վերամուտը դիրք չճշդել կառավարութեան հանդէպ։ Սեպտեմբերի վերջ յայտնի պիտի բլլայ թէ կուսակցութիւնը պիտի պահէ՞ իր երեսփոխանները։ Նոյն դիրքին մէջ են՝ աջակողմեան երկու միւս կուսակցութիւնները՝ ազատական կուսակցութիւն եւ Իտալական Ընկերային Շարժում (Նոր-Ֆաշական)։

Այրի Տիկին Լիլիկ Սապունճեան, Լեւիկ, Էտիկ եւ Աստղիկ Սապունճեան, Այրի Տիկին Եավրեան եւ զաւակները (Թիֆլիզ), Տէր եւ Տիկին Ազգին Սապունճեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Յակոբիկ Սապունճեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Ցեցեան եւ զաւակները (Երեւան), Տէր եւ Տիկին Պասեան եւ զաւակները (Թաւրիզ), Տէր եւ Տիկին Յովհ. Սապունճեան եւ զաւակները, Արտաշէս Սապունճեան, Այրի Տիկին Վարդուհի Սապունճեան (Թեհրան), Տէր եւ Տիկին Բենեամին Սապունճեան եւ զաւակները (Ապատան), Այրի Տիկին Հայկանուշ Ջրբաշեան, Տէր եւ Տիկին Արծրունի Ջրբաշեան, Տէր եւ Տիկին Հայկ Գործունեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Պետրոս Զարոյեան, Տէր եւ Տիկին Լեւոն Պէրպէրեան եւ զաւակները, Այրի Տիկին Ջանթիկեան (Նիւ Եորք), եւ իր բոլոր բարեկամները խոր ցաւով կը ծանուցանեն իրենց ամուսնոյն, հօր, եղբօր եւ ազգականին

ՆԵՐՍԷՍ ՍԱՊՈՒՆՃԵԱՆԻ

դառնաղէտ մահը, որ տեղի ունեցաւ երեքշաբթի 25 Օգոստոս, առաւօտեան ժամը 3ին, իր բնակարանին մէջ, յետ կարճատեւ հիւանդութեան։

Յուղարկաւորութեան տխուր արարողութիւնը պիտի կատարուի այս հինգշաբթի, կէսօրէ վերջ ժամը 1ին, իր բնակարանին մէջ, 36 Ռիւ տիւ Ժէնէրալ Լըքլէր, Պուա Քոլոմպ։

Մասնաւոր մահազդ ղրկուած չըլլալով, կը խնդրուի ներկայս իբր այդ նկատել։

## ՍԱԿԱԳԻՆ ԸՆԹԱՑԻԿ ԱԶԴԵՐՈՒ

ՄԷԿ ԱՆԳԱՄՈՒԱՆ ՀԱՄԱՐ

| | | |
|---|---|---|
| ՄԱՀԱԶԴ | 2.500 | Ֆր. մինչեւ 1/4 սիւնակ |
| ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ | 1.500 | Ֆր. մինչեւ 1/8 սիւնակ |
| ՅԻՇԱՏԱԿՈՒԹԻՒՆ | 1.000 | » » » » |
| ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ | 1.500 | » » » » |
| ՀԱՐՍԱՆԻՔ, ՆՇԱՆՏՈՒՔ | 2.000 | » » » » |
| ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ | 1.000 | » » » » |
| «ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ» | 1.000 | » » » » |
| «ԿԸ ՓՆՏՌՈՒԻ» | 500 | » » » » |

Այս գիները մէկ անգամ հրատարակելի եւ նշանակուած ծաւալով ազդերու համար է։

Կանխիկ վճարումը պարտաւորիչ է։

Առեւտրական կամ այլ ազդերու մասնաւոր պայմաններուն համար դիմել Վարչութեան։

## ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ

★

Կազմակերպուած Հ. Բ. Ը. Միութեան Վալանսի մասնաճիւղի կողմէ, այս կիրակի ամբողջ օրը, Սէն Փերէի մայրապետներու գողտրուն անտառին մէջ։

Երգ, նուագ, պար եւ հաճելի անակընկալներ։

Տեղւոյն վրայ պիտի գտնէք «հում միսի յօշած», «շամփուրով խորոված» եւ աղանդերներ։

Վալանսէն՝ Սէն Փերէ ամէն ժամ օթոքառ կայ, Սինեմա Փալասի առջեւէն եւ Փլաս տը լա Ռեփիւպլիքէն։

Սիրով կը հրաւիրուի Վալանսի եւ շրջաններու Հայութիւնը անխտիր։



ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Գրիգոր եւ Արմենակ Եսայեան կը փնտռեն իրենց եղբայրը՝ Կարպիս Եսայեան, բնիկ Խօտէմիչցի։ Տեղեկութիւն ունեցողները կրնան գրել՝ Տիկին Գոհար Մաստեանի՝

258, Avenue d'Argenteuil Asnieres Seine



ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

ԱԼՊԵԱՆ ՌԱԶՄԻԿՆԵՐՈՒ ՀԵՏ

ԳՐԵՑ

ԱՐԱՄԱՅԻՍ ՍՐԱՊԵԱՆ

Դիմել հեղինակին՝

Via Pacini 30, MILANO

Imprimerie Spéciale
du Journal « Haratch »

ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

Անդաստան

ԹԻՒ 10

ԱՆԴԱՍՏԱՆ Գրականութեան Արուեստի ԱՆԴԱՍՏԱՆ Հայ եւ Օտար գրականութեան ԱՆԴԱՍՏԱՆ

Խմբագիր

ԲԻՒԶԱՆԴ ԹՕՓԱԼԵԱՆ

46, Rue Richer - PARIS (9e)

Գին՝ 1200 ֆրանք

Արտասահման 4 տոլար

ՊԵԼԺԻԱ

Կայանի տղաքը կը խնդրեն որ հաճիք ներկայ ըլլալ իրենց

ՄԵԾ ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍԻՆ

որ տեղի պիտի ունենայ Գայէնհօֆ 21, Ավընիւ Մաքս-Թեմմէրման, Հայտ, Կիրակի Օգոստոս 30ին, ժամը 11էն սկսեալ։

ՊԱՐ, ԵՐԳ, ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

ՊՈՒՖԷ, ԽՄԻՉՔ

ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ

Նոր արձանագրութիւնները կը շարունակուին 1959-1960 ուսումնական տարեշրջանին համար։

Իրենց զաւակները արձանագրել փափաքող ծնողքները փութան դիմել Տեսչութեան, գրաւոր կամ հեռաձայնով։

Collège Arménien S. Moorat

26, Rue Troyon - SEVRES (S & O.) Tél. : OBS. 18-28

Վարժարանի անցեալ տարուան աշակերտներուն ծնողքներուն ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ կը յանձնուի.—

Եթէ մինչեւ Սեպտեմբեր 8 չնորոգեն իրենց զաւակներուն արձանագրութիւնը, Տեսչութիւնը ի հարկին, ազատ է անոնց տեղերը յատկացնել նոր արձանագրութիւններու. հետեւաբար, այդ թուականէն առաջ պէտք է պատասխանեն, Տեսչութեան՝ Մայիսի մէջ ղրկած շրջաբերականին։

